№ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ 5.

# ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆՆԵՐ.

ՄՈՍԿՈՒԱ
ՁՈՒԼԱՐԱՆ ԵՒ ՏՊԱՐԱՆ Օ. Օ. ՀԵՐԲԵԿ.
1887.

Дозволено цензурою. С.-Петербургъ, 7 марта 1887 года.







Словолитня и Типографія О. Гербека. Москва, Чернышевскій пер., № 5.





# ԸՆԿԵՐՆԵՐԻՍ

նուիրում եմ

## ԱՌԱՋԻՆ ԳՐԱԿԱՆԱԿԱՆ ՓՈՐՁԵՐՍ

Ձեզ եմ նուիրում իմ անվարժ տողեր,
Ձեզ, իմ ընկերներ, որ մաքուր սրտով
Դեռ պահպանում էք ազնիւ միտք և սէր,
Որ կեանքն էք տեսնում դեռ պարզ հաւատով:

Եւ սիրելի է պատանեկութիւն,
Այդ վառ հաւատը, ոսկի երազներ,—
Թէպէտ և քակէ բաղդն անագորոյն
Մեր սիրուն պսակի չքնաղ ծաղիկներ:

Միայն նա կ'ապրի, որ միշտ է անմահ,
Սուրբ գեղեցկութիւն և սուրբ գաղափար.
Վեհ, ազատ միտքը կենդանի կըմնայ,
Անմնացոր սէրը խեղճ եղբօր համար:



# ԵՐԿՈՒ ՃԱՆԱՊԱՐՀ.

Նայում եմ առաջ—երկու ճանապարհ
Բաց է իմ դիմաց. մէկը տանում է
Շքեղ, բաղձաւոր, նուիրական աշխարհ
Քնքուշ զգացմունքի, ուր միշտ ծաղկում է
Գարունը սիրոյ երկնքից օրհնած:
Այնտեղ անթառամ վարդի պսակներ,
Երջանիկ օրեր սիրով զարդարուած
Եւ վայելչութեան անձկալի ժամեր
Աշխատաւորի վաստակած գլխին
Պիտի պարգեւեն հանգիստ խնդագին:

Միւսն անապատ ինձ դուրս է հանում,
Որ կարօտում է մըշակող բազկի:
Այստեղ պերճափառ վարդ չէ բուսանում,—
Միայն տատասկը և փուշը վայրի.

Եւ կեանքը մեռած և օդը խեղդող,
Սրտացաւ խընամք, եթէ այդ լինէր,
Միշտ երախտամոռ հոգուց ոտնակոխ.
Չէ ժպտում արև, սևաթոյր ամպեր
Գոռ փոթորիկ են երկրին գուշակում։—
Եւ ես կանգնած եմ և խոր մտածում,
Ո՞ր իմ անհաստատ քայլերըս ուղղեմ,
Արդեօք երկուսից ես ո՞րը ընտրեմ։

Այնտեղ, ըղձում եմ, փարթամ, երջանիկ
Գլորուելու են իմ կեանքի օրեր.
Աչագեղ կոյսը հայեացք չքնաղիկ
Պարգևում է ինձ, և սրբանուէր
Նոճիների տակ պիտ գլուխս հանգչի
Նորա մարմարեան կուրծքին նազելի,
Եւ պիտի գտնեմ այն վառ աչերում
Ես դրախտավայել մի վայելչութիւն...

Այստեղ ականջըս փայփայելու չէ
Կանաչ պուրակում թռչնոց մեղեդին,
Ոչ պիտի տեսնեմ սփռոց թաւիշէ
Ես անուշաբոյր ծաղկոտ մարգերին։
Ո՛չ. արիւն-արցունք, լքեալ հառաչանք,
Անտէր ամբոխի անվերջ տառապանք,



Արդար քրտինքով մշակած գետին
Աւարի մատնած—ահա՜ իմ բաժին։

Բայց այնտեղ կեանքը չունի նպատակ
Բացի անձնական բարօրութիւնից,
Իսկ այստեղ գործի ասպարէզ արձակ,
Ազնիւ և վսեմ, թէև փշալից։—
Եւ ես կանգնած եմ և խոր մտածում...
Կեա՛նք, ինձ երկուսից ո՞րն ես պատրաստում։

*1883. 1 մարտի։*





# ՊՈՅԵՏ

(Ս. Նադսոնից).

Թող քո երգում եռայ հուրը բարկութեան,
Թող երգդ այրէ հոգի անկեղծ արցունքով,
Թող արձագանք լինի ազնիւ ցանկութեան,
Ոգեւորէ հայրենիքի սուրբ սիրով.
Նորա ամէն թող ձայնն առաջ մեզ կոչէ,
Յոյս ներշնչէ ահեղ մարտից ընկճուածին,
Անմահութեամբ թող ընկածին պսակէ,
Նշաւակէ երկչոտութեամբ փախչողին.
Սըտութեան հետ և խաւարի կռիւ մտած
Ճշմարտութեան, լուսոյ համար մարտնչենք,—
Այն ժամանակ քո առաջին խոնարհած
«Դու պոյետ ես» քեզ հրճուանքով մենք կ'ասենք:



Թող երգդ հնչէ որպէս վտակ կարկաչուն,
Որ սահում է մեղմ յորձանքով արծաթի,
Որպէս աղբիւր եռան յոյսեր, ցանկութիւն,
Եւ ոյժ լուսի և մի ծիծաղ կենդանի.
Թող մոռացուինք մատաղ ձայներ լսելով,
Զընաշխարհիկ թռչենք քեզ հետ մի աշխարհ,
Ուր չեն թափվում դառն արտասուք տանջանքով,
Ուր կայ հանգիստ, գեղեցկութիւն սիրավառ.
Զուարճանանք թողած ամէն վիշտ, հոգսեր,
Եւ մանկութեան երազներովը ապրենք,—
Եւ մենք կ'օրհնենք այն ժամանակ քո գործեր,
«Դու պոյետ ես» քեզ հրճուանքով մենք կ'ասենք:

1887.







„Իմ հայրենիքը տեսե՞լ ես, ասա“:

Տեսե՞լ ես արդեօք այն բլուրները,
Ուր ճոխ ծաղկում է մշտական գարուն,
Կանաչում թաղուած այն այգիները,
Ուր իբրև գոհար խաղողն է հասնում:

Տեսե՞լ ես դաշտեր, մարգագետիններ,
Ու բացուած այնտեղ վառ շուշան, մեխակ,
Շնորհատու արև, ոսկի նշոյլներ
Եւ միշտ սիրաշունչ երկինք կապուտակ:

Տեսե՞լ ես ծերուկ ժայռերի միջով
Կատղած անցնելիս գետը փրփրած,
Ականջ դրե՞լ ես խռոված հոգով
Այն աղմկալից գոռոցին ալեաց:



Տեսե՞լ ես գիւղը հովտի մէջ մենակ
Եւ շուրջը փռուած շքեղ պարտէզներ,
Եւ ոսկի հասկեր և խաղաղ վտակ,—
Լսե՞լ ես քաղցրիկ առաւօտի երգեր:

Եւ դու տեսե՞լ ես նորա գանձն անգին,
Դէմքով հրեշտակ, հասակը փարթամ
Հարաւոյ դուստրը, հրապոյրքն աչերին,
Շրթունքը ալ վարդ, ժպիտն անթառամ...
Սիրատանջ այրուած քնքուշ այտերից
Քաղե՞լ ես համբոյր որ քաղցր է մեղրից:

1880. 17 հոկտեմբերի:





## ՄԻՑԿԵՒԻՉԻՑ.

Ես ջերմ արցունք թափեցի,
Երբ մանկութիւնս յիշեցի.
Ես ջերմ արցունք թափեցի,
Երբ զօրութիւնս յիշեցի.
Ես լալիս եմ և այժմիկ,
Մօտ է վերջին փոթորիկ...

1880. 30 սեպտեմբերի:





* * *

Առաւօտս անցաւ: Առաջ իմ նայում—
Պարզ է հորիզոն, և արևն ոսկի
Ինձ իւր անուշիկ ժպիտն է նուիրում,
Եւ ողջ բնութիւնն այնպէս գեղանի՜...

Ականջ եմ դնում—մի ձայն անմեկին
Խօսում է ինձ հետ, բաղդըս գուշակում,
Եւ իմ առաջև բնութեան գաղտնիքն
Կարծես թէ բնաւ բացվում, մերկանում:

Ահա տեսնում եմ իմ կեանքի պատկեր
Այնպէս սրտառուչ գունով նըկարած—
Սէր, վայելչութիւն, դըրախտի երազներ,
Կեանք չընաշխարհիկ ահա իմ դիմաց:

Բայց, ճակատագիր, դու ինձ չե՞ս խաբում,
Չէ՞ քո ցոյց տուածն ոսկեզօծ դիմակ.
Աւա՜ղ, ցնդում է իմ յոյսը օդում,—
Կէսօրուան արդէն մօտ է ժամանակ...

1882. 22 նոյեմբերի:



* * *

Նուէր օր. Մարիամ Զ—ին.

—

Ես զբօսնում եմ բերկրամիտ
Կանաչազգեստ պարտիզում,
Մանիշակը իւր ժպիտ
Իմ աչքին է պարգեւում:

Սիրուն մանուկ, քո աչեր
Վառ են ինչպէս այդ ծաղիկ,
Եւ սիրելի քո պատկեր
Նոյնպէս մատաղ, գեղեցիկ:

Քո ժպիտն էլ անմեղ է,
Ինչպէս չքնաղ մանիշակ.
Մանուկ քաղցրիկ, ինձ սիրէ—
Մնա՛ այդպէս միշտ յստակ:





* * *

Տապլի՛ր, պատանի՛, տալ վայելչութեան,
Կեանքի ծիծաղկոտ ոսկի օրերին
Հարկ լիաձեռն, քանի անսասան,
Ծախիչ ժամանակ քո բաց ճակատին
Ձեռըն չէ մըխել ակօս ձըգելու,
Քանի ժպտում է քեզ դէմքն արեւու,
Քանի հաշտ աչքով քո երջանկութեան
Նայում է երկինք ծաղկավառ գարնան...

Կ'անցնեն շուտ տարիք, և դու կը փոխուիս.
Զրկայ եռանդըդ պատանեկութեան,
Եւ նախկին կըքեր այլ եւս չունիս,
Եւ չէ տըրոփում բոցով սրբազան
Քո մաշուած սիրտը. աչերըդ մարած
Չէ վառում հուրը մանուկ արտասուաց,
Եւ միայն վերջին փոթորկից առաջ
Լսւում է ջարդուած կրծքիդ թոյլ հառաչ:

1883. 27 փետրվարի:





*
* *

Որպէս յաղթանդամ մի ծերուկ հսկայ
Կախուած է ժայռը ջրերի վրայ.
Ալիքը կայտառ գնում են գալիս
Եւ ժայռին սիրոյ համբոյր են տալիս:

Խաղում են անհոգ ալիքը դէպի,
Ցուցնում են գրկած պատկերն արեւի,
Եւ որպէս մանուկ ժպիտն երեսին
Մեղմիկ շշունջով խօսում են ժայռին.

«Լսիր, ծերունի՛, ինչո՞ւ ճակատիդ
Սև կնճիռները չեն տալիս դէմքիդ
Մի օր խնդութեան շողով ցոլանալ—
Ողջը փոխվում է, դու նոյնն ես դարձեալ:



«Ազատ լեռների ազատ զաւակներ,
Մենք քեզ բերել ենք անթիւ գոհարներ.
Երկնքի դստեր—վարդի լեռնասուն
Կը ցօղենք կուրծքիդ անուշհոտութիւն:

«Մենք երանաւէտ քնքուշ նուագով
Կը կոչենք խորքից ձկներն երամով
Եւ ոսկեզօծուած գարնան արևից
Քեզ մեր զուարթ պարին կ'անենք խնդակից:

«Եւ քո ականջին միշտ սիրոյ երգեր
Մենք արշալուսից կ'ասենք մինչ աստղեր,
Եւ քեզ կը փարենք և քո ծեր կուրծքին
Մենք հանգչել կը տանք մեր քաղցր կրքին...»

Ալիքը կայտառ գնում են գալիս,
Սև ժայռը նախկին իւր վիշտն է լալիս...
Խաղում են ալիք, ուրախ կարկաչում—
Նա կրկին անշարժ, նա կրկին տրտում...

1884. 5 սեպտեմբերի.



## ԱՒԵՐԱԿ.

Որպէս վաղեմի մի աւանդութիւն
Կամ շքեղ երազ անմեղ մանկութեան,
Կենդանանում է այսօր իմ մտքում
Խրոխտ աւերակն նախնեաց մեծութեան.
Այստեղ բեկորներ վսեմ արուեստի,
Այնտեղ յիշատակն արքունի փառաց,
Եւ վկայարան սրբազան ուխտի,
Եւ տխուր հետքը մեծաշուք կենաց...

Ո՛հ, այսպէս ողջ մեր կեանքն է վաղանցիկ,
Ողջը լոկ ծաղր է անսիրտ բնութեան.
Եւ սէր, և հրճուանք, համայն գեղեցիկ
Զոհ է աւերի և մոռացութեան:
Ինչպէս պատրանքը հեշտասիրութեան,
Ինչպէս գրգիռը արեան պատանու,
Խաբուսիկ ժպիտն արևի աշնան,—
Բոլորը վաղն է անհետանալու:

1884. 17 սեպտեմբերի.



* * *

Ախ, տուէք ինձ քաղցրը մի քուն,
Կեանքից հեռու սըլանամ
Այն աշխարհը, ուր խնդութիւն,
Ուր սէրն է միշտ անթառամ:

Քնքուշ վարդերն ինձ բարձ լինին,
Վառ կանաչից իմ վերմակ,
Նոցա բոյրը զուարթագին
Ծծեմ անվերջ ես անյագ:

Եւ խայտալով իմ առաջին
Վտակն անուշ խոխոջէ,
Մի թարմութիւն եդեմային
Զորս բոլորքս տարածէ:





Եւ ինձ ժպտի արշալուսին
Գարնան մատաղ արեգակ,
Եւ գիշերով իմ ճակատին
Խաղայ գողտրիկ վառ լուսնակ։

Եւ աչագեղ կոյսն ականջիս
Իւր մեղեդին նուագէ,
Եւ հերարձակ սիրով վզիս
Փարէ, մեղմիկ փաղաքշէ...

Եւ յաւիտեան վայելչութիւն
Գրկէ հոգիս, չյագենամ...
Ախ, տուէք ինձ քաղցր մի քուն,
Հեռու, հեռու սլանամ...

1884. 18 սեպտեմբերի.





## ՀԵՌՎԸԳԻՑ.

Կ'ուզէի անհետ հեռանալ կորչել
Որպէս ոսկեվառ շողն արշալուսի,
Որպէս մի աստղիկ կ'ուզէի հանգչել
Բարձր կամարում կապոյտ երկնքի։

Որպէս քաղցր երազ կ'ուզէի անցնել,
Խանգարած տգեղ հոգսերիցն օրուան,
Կամ գիշերային ձայնի պէս մեռնել,
Տեղ տալով խորին մի խաղաղութեան։

Եւ որպէս ցօղը ես շոգիանալ
Կ'ուզէի հզօր արեւի տապից,
Կ'ուզէի դէպի երկինք բարձրանալ
Որպէս սրբազան կնդրուկ բուրվառից։

Եւ կը ցանկայի ինչպէս ծուխ ցրուիլ,
Ինչպէս օդումը բոյր ծաղիկների.
Ողջ էութեամբըս բնաւին ջնջուիլ
Կ'ուզէի յանկարծ առանց տանջանքի։

Եւ կը ցանկայի… բայց ինչո՞ւ ցանկամ.
Դիւրաւ չէ գալիս մահը վերահաս.
Մինչ նորա գալը բաժին է մարդկան
Սրտամաշ ցաւով տանջուիլ հանապազ։

Եւ ահա՛ յետոյ հասնում է միայն
Բոլոր վշտերի տխուր փրկութիւն,
Եւ քեզ համար է լոկ անվիշտ վախճան,
Քեզ համար, դու մե՛ծ, անսիրտ բնութիւն։

1884. 21 սեպտեմբերի.





* * *

Նուէր օր. Կ. Ս.—ին.

Մի և նոյն վիշտը մեզ միացրեց,
Երկու վիրաւոր սրտերի մօտեցան.
Անմեկին ընկեր, հոգիս վկայեց—
Դու իմ հրեշտակն ես մխիթարութեան։
Տեսնո՞ւմ ես, քուրիկ, երբ դու փոթորիկ
Փչում ահագին և մատաղ թփեր
Խիստ տատանում է, նոքա իրար գիրկ
Դիմում են սիրով, ասես, այդ լինէր
Փրկութեան անքոյթ մի պատսպարան…
Բայց հողմը ուժգին բաղխում է նոցա,
Եւ ահա՛ կրկին իրարից բաժան
Իրանց չար բաղդը ողբումեն նոքա։

Ո՞վ գիտէ, գուցէ խիստ ճակատագիր
Եւ մեզ անջատէ մի օր յաւիտեան,
Եւ դու, սիրելի՛, արդեօք տարագիր
Եղբօրդ չե՞ս տալ դու մոռացութեան.
Կը յիշե՞ս արդեօք միասին թափած
Մեր արտասուքը, 'ի զուր հառաչանք,
Եւ դարձեալ կ՚զգա՞ս քեզ համար միշտ բաց
Մի լքեալ սրտի անվերջ տառապանք....

*1884. 3 նոյեմբերի.*





## ՅԱԿՈԲ Ա. Վ. ՍՈՒՐԷՆԵԱՆՑԻ

### ՅԻՇԱՏԱԿԻՆ

*(† 1884. 21 հոկտ.).*

Մեռա՜ւ, ասում ենք՝ ամենայն անգամ,
Տալով հրաժեշտի ողջոյնը մէկին,
Մեռա՜ւ, և ահա՛ օրհասին խիստ ժամ
Մէկին էլ յանձնեց յաւիտեան երկրին...

Անցնում են, կ՚անցնեն օրեր, տարիներ,—
Եւ մենք բոլորս բաժին ենք հողի,
Եւ մեզնից միայն պիտ մընայ աւեր
Ազնիւ կրքերի, ոսկէ յոյսերի։

Թէ նեղ շիրիմն է մեր վերջին կայան—
Ինչո՞ւ են արցունք, ինչո՞ւ հառաչանք.
Ինչպէս ծուխն օդում, երազ մանկութեան,
Պիտ անցնի ունայն երկրային մեր կեանք։

Բայց նա որի մէջ ցոլում էր վառուած
Կայծը փրկչական ոգեշունչ խօսքի,
Նա որի սիրտը միշտ սիրով լցուած,
Անձն հասարակաց տուած էր օգտի,

Որ անկեղծ հոգով հայր կարօտեալին
Հանդիսացած էր և հովիւ արթուն —
Նա չէ մեռնելու. մարդկան շրթունքին
Միշտ պիտի մնայ նորա քաղցր անուն:

Թող հանգչի գլուխն աշխատաւորի
Կեանքի հոգսերից մայր երկրի կրծքում,
Որ վեհ խորհրդի, ազնիւ մտքերի
Տուել էր նորան ընդունակութիւն:

Եւ թող բնութիւն շքեղ պճնուած
Ամենայն գարուն, զերթ չքնաղ մանուկ,
Իբրև երգ սիրոյ հնչէ լայնատարած
Անխռով մշակին անուն մեծաշուք:

*1884. 21 նոյեմբերի.*







## ԳՐԵՐԱԳՐՈՎԻՉԻՑ.

Ցոլուն աստղերը կապոյտ երկնքում
Երգում են անուշ միասին խմբուած,—
Եւ ըզգուշութեամբ կամաց են երգում
Որ չզարթեցնեն երկիրը նիրհած.
Ա՜խ, ամբողջ օրը շրջող ոտներից,
Անվերջ աշխատող կուռ բազուկներից,
Ամուր բաբախող մարդկանց սրտերից
Խեղճ մայր-երկիրը սաստիկ է յոգնած...

*1886. 14 մարտի.*



## ԳԻՇԵՐՈՒԱՆ ԵՐԳԸ.

Տխուր նստած եմ սենեկում փակուած
Եւ հազար մի վիշտ սիրտըս են նեղում...
Դուրսը մութն է, ցուրտ. քամին կատաղած
Իմ լուսամուտը ծեծում է, ծեծում:

Զարտամնջ պանդուխտ, քամի՛ դու ձմռան,
Իՙնչ ես կամենում. ինչո՞ւ անհանգիստ
Պտտեցնում ես տարափները ձեան.
Իՙնչ ես դու երգում. այդ սէ՞ր է թէ վիշտ:

. . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . .



Արդեօք փախե՞լ ես, իբրև խորթ զաւակ
Չարչարուած անմիտ հալածանքներից,
Թէ՞ չէ ձանձրացած դու կեանքից դատարկ
Վազում ես կորած բաղդի յետևից:

Թէ փաղաքշե՞լ ես նազելի շնչով
Դու շուշանաթեղ կուրծքն օրիորդի,
Կամ թէ շփե՞լ ես կոշտացած ձեռով
Խոր կնճիռները անբաղդ ծերուկի....

Արդեօք եկա՞ծ ես դու այն աշխարհից,
Ուր փարթամ ծաղկած մշտական գարուն,
Ուր ջինջ կապոյտը միշտ պայծառ երկնից
Վառ ցոլանում է առուում պաղպաջուն...

. . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . .

Ես արևնաների լայն հովիտներից
Նուէր եմ բերում ու փնջեր վարդի,
Այլ ահեղ պըսակ, պըսակ փըշալից
Որ զարդարումէ ճակատը հայի:

Ես սլանում եմ չորցած դաշտերից,
Ուր հին աւերակ նոր աւերակին
Միշտ տեղ է տալիս, բոլոր կրծքերից
Նոր հառաչանք է թռչում դառնագին.

Ուր չըկայ անդուսպ կրքերին սահման,
Ուր օր ու գիշեր խիստ դատավճռին
Սպասում են անթիւ զոհեր բռնութեան,
Ուր չըկայ ժըպիտ մէկի երեսին:

Այնտեղ թօշնում է վարդը կոկոնում,
Զրկուած շողը ոսկի արեւու...
Եւ արդեօք ե՞րբ է այն թշուառ երկրում
Փրկութեան գարունն նորից ծաղկելու....

1885. 13 դեկտեմբերի.





# ՍԻՒՆԵԱՑ ԻՇԽԱՆԸ.

„...և նա ըստ առաջին կարգի օրինացն արքունի արկանէր զպատուական հանդերձն զոր ունէր 'ի Թագաւորէն... և զամենայն օրէնս պատուոյն զանժամբ արկեալ՝ երթայր յարքունիս. շքեղ և երևելի քան զամենեսեան երևէր բազմութեանն:" Եղիշէ, Ցեղանակ Է.

Արեան փայլով, տանջանքներով անմահացած,
Ինչպէս ցընորք երեւում են օրերն անցած.
Ես չեմ կարող նոցա նայել լուռ պարծանքով,
Այլ մի խորին ցաւակցութեան ըզգացմունքով.—
Ի՞նչ մեզ թողին մեր քաջարի գոված նախնիք.
Լացի՛, ողբի՛ անփառունակ մի հայրենիք...
Եւ անձրեւը ծաղկապըսակ վառ փունջերի,
Որ մանկական բերկրութիւնով անմիտների
Առաջին ենք մենք տարածում, ես մի նըշան
Համարում եմ մեր փոքր հոգու աղքատութեան.
Շղթան սիրող ըստրուկների մի բազմութիւն—
Ահա՛ նոցա թողած անփառք ժառանգութիւն...

Բայց այդ անցեալի խորին խաւարից
Ահա առնում է հոգումս յարութիւն
Նա, որ մերժուած է բոլոր աշխարհից,
Որի յիշատակն յանդիմանութիւն
Լսել է միայն: Բայց անէծքների
Անվերջ կարկուտը ինձ չէ շփոթում.
Սև գլօշմի տակից մաշուած ճակատի՝
Ես նորա այրող տանջանքն եմ տեսնում:

Ահա նա մենակ, առանց հաշտութեան
Արտասուքների, առանց կարեկից —
Մի սիրող սրտի մխիթարութեան,
Հեռու աշխարհի փարթամ խնջոյքից,
Ընկած է բանտի խոնաւ անկիւնում
Գըլուխն ալեզարդ կուրծքին խոնարհած,
Յուսահատութի՛ւն խորտակուած սրտում
Եւ հուրը զըղջման խեղդող արտասուաց...
Ընկած է մենակ, և խուլ տանջանքով
Նա իւր ոճիրը, անկումն է ողբում
Եւ յիշողութեան թոյնը նոր ուժով,
Ինչպէս շէկ երկաթ, ուղեղն է այրում...

«Հեռո՛ւ աչքերըս, տաղտո՛ւկ տեսիլներ,



Ծերունի կուրծքըս դըժոխք դարձըրէք.
Հեռո՛ւ աչքերըս, արիւնոտ սուսեր,
Եւ դու, անողո՛րմ, թշուա՛ռ հայրենիք:
Ո՛հ, ես երջանիկ պիտի լինէի,
Թէ ձեր անէծքը թափէր իմ գլխին
Ահեղ դաշտումը մահառիթ կռուի,
Պղտոր Տղմուտի չարագոյժ ափին...
Իսկ այժմ անջատուած արևի շողից,
Հեծում եմ մենակ բանտումըս խաւար,
Գործած յանցանքըս,—ըստուեր թունալից,
Մի օձ է խայթող իմ հոգու համար...

Բայց ինչո՞ւ, ինչո՞ւ. մի՞թէ այլոց պէս
Քեզ, ի՛մ հայրենիք, չսիրեց Վասակ,
Մի՞թէ քեզ համար սիրտըս աղէկէզ
Պիտի զոհուելու չլինէր ընդունակ...

Ո՛չ, ո՛չ. ես մի խեղճ, աննըշան ճճի,
Արժանի էլ չեմ լինել քո ոտքին
Կոխելու հողը... անէ՛ծք դարերի,
Ես օրինակ եմ գալոց սերունդին
Իբրև չարագործ, որից գըթառատ
Երկինքն էլ արդէն դարձրել է երես.

Բայց դու, հայրենի՛ք, ինչո՞ւ ես վըհատ,
Մի՞թէ կարող է չար Յազկերտը քեզ
Ծուխի պէս խեղդել իւր մագիլներում
Ինչպէս մի ուրուր... Դու, թագից զըրկուած,
Մի՞թէ մոռացար փառքըդ անցեալում,
Քո պըսակաւոր արի իշխանաց...

Ա՜խ, անցեալ օրերն անմե՛ղ շըջանում...
Այն ի՜նչ երջանիկ, քաղցր օրեր էին.
Մի հանդարտ լուսով ճըրագն էր վառվում,
Շուրջըս սիրական որդիք, ամուսին...
Ո՜հ, հեռու, սիրուն, թշուառ զաւակներ,
Ձեր հայրը մեռաւ... Ի՞նչ հայր, ե՞ս միթէ.
Հեռու ինձանից. ձեր հայրն իշխան էր...
Ինձ շուտով խորունկ շիրիմ կըփակէ—
Դեռ լայն է բանտըս...

—Նոքա փառաւոր
Պայազատեցին անուն, յիշատակ,
Նոքա քեզ բերին մահուան այս սեւ օր
Եւ բոլորեցին տանջանքի պըսակ
Ալեւոր գլխիդ. եւ դու մոռացա՞ր,
Իմ խե՛ղճ հայրենիք, արեան պալատներ,



Անառակութեան խայտառակ տաճար
Եւ արենապիղծ շամբշոտ գիշերներ...
Այդ քո թագազարդ պետերը չէի՞ն։
Եւ դու, ուժասպառ, վիրաւոր եղնիկ,
Ի՞նչպէս կամեցար պարսիկ առիւծին
Կըռիւ եղանել... Անբա՛ղդ հայրենիք,
Արիւնդ հոսում էր հեղեղի նըման,—
Դու նոր վէրքերով միթէ յարութիւն
Կամեցար առնել... երեսիդ վըրան
Դեռ չէր ցամաքել արտասուաց առուն—
Մի ժըպիրհ ճակատ դու դոռ վըտանգին
Ցոյց տուիր անահ։ Եւ ի՞նչ. փոխանակ
Օրօր ասելու նիրհող զաւակին,
Ոսկալի մարտի զարկեցիր կոչնակ...

Եւ քո քաջերը շուտ հաւաքուեցան,
Ինչպէս փեթակի շուրջը մեղուներ,
Մահ տալ, մահ առնել նոքա երդուեցան,
Լինել ողջակէզ բոլորանըւէր
Սուրբ ազատութեան սեղանի վըրայ։
Եւ ես... ո՛հ, թո՛ղ ինձ, չա՛ր յիշողութիւն,—
Ես էլ մըտերիմ քեզ հանդէս եկայ
Կռուին բերելու ոգեւորութիւն.

Սուր սըլաք, շանթեր թշնամու գլխին
Տաղ տաղ աներկիւղ մըտածում էի,
Ես կեանքըս փրկանք փառքիդ սուրբ օրին
Սրտէն ցընորուած համարում էի:
Եւ հասաւ ժամը — թնդաց Աւարայր,
Հայոց զէնքերի լըսեց շառաչիւն.
Ասպարէզ եղանք այնտեղ քեզ համար,
Աշխարհ սիրական, թափել յորդ արիւն...

—Բայց ի՞նչ եմ տեսնում. այդ մի՞թէ դուք էք,
Անգի՛ն զաւակներ... Ա՜խ, ծածկէք շուտով
Այդ կուրծքը պատռած. մի՛ մերկացընէք
Մատաղ գըլուխներդ ներկուած արիւնով...
Կուրացէ՛ք, աչեր, յանդիմանութեան
Այն հուրը չտեսնեմ նոցա աչքերում.
Այն էր որ վառեց կայծակի նըման
Զարտանջ հոգիս գոռ մարտի դաշտում...

Ի՞նչ... ի՞նչ էք կամենում. Վասակը ձեզ հա՞յր...
Հեռո՛ւ ինձանից, թշուառ ուրուներ.—
Ահա՛ թշնամին հասաւ զինավառ,
Պատեանի մէջ են դեռ ձեր սուսերներ.
Յառա՛ջ դէպի մահ, փառաւո՛ր օրհաս—
Ահա մեր նըւէր քեզ, մա՛յր հայրենիք,



Թող մեր որդիքը կրկնեն հանապազ
Որ վըճակեցինք մենք մահ երջանիկ...

Նշաւակութեան բանտի անկիւնում,
Յուսահատութեան տառապանքներո՜վ.
Ո՞վ է այդ մահը արդեօք ժառանգում,
Ե՞ս — դաւաճանի անարգ պըսակով...
Առանց սիրելեաց արտասուքների,
Առանց աշխարհի, երկնից հաշտութեան...—
Ա՜խ, հանդիստ թող ինձ, տեսի՛լ սոսկալի,
Չէ ներումն երբէք բաժին մատնութեան...

Եւ դու, հայրենի՛ք, լուռ եմ արդէն,
Կարդում ես ահեղ քո դատավճիռ.
Շրթունքըդ ինձ միշտ պիտի նըզովեն—
«Վասա՛կ, այս ի՞նչ էր որ գլխիս բերիր»...
Ահա կենդանի դու մի կշտամբանք
Կանգնած առաջիս, պըսակըդ փետած,—
Ես—ապուշ մատնիչ, բաժինըս—տանջանք,
Այս գերեզմանում յաւիտեան փակուած:

—Ո՞վ մատնիչ... Վասա՞կ... շարժուեցէք, պատեր,
Տե՛ղ, կարկո՛ւտ, մրրի՛կ, զարկեցէ՛ք գլխիս.
Դու, հաւատարի՛մ պողպատ, իմ ընկեր,

Կուրծքըս պատառիր — արիւնը սրտիս
Թող սեւ հեղեղով հեւքըս լուանայ,
Ճակատիս դընէ անէծքի կընիք,
Թող դարեր անցնեն, աշխարհն իմանայ—
Անարգ Վասակը մատնեց հայրենիք»...

*1887. 17 փետրվարի.*





*
* *

Նուէր օր. Եղիսաբեթ Ջ—ին.

—

Գեղեցիկ օրեր, ծաղկավառ օրեր
Իմ ցնորամիտ պատանեկութեան,
Գիտեմ որ շուտով չարագոյժ ամպեր
Կը պատեն երկինքն իմ սիրուն գարնան.
Գիտեմ որ արեւն, որ հիմայ պայծառ
Ծիծաղում է ինձ, պատիր յոյսերով
Եւ խոստանում է իմ կեանքի համար
Ծաղիկ բուսցընել ոսկէ շողերով:

Եւ այն բոլորը, ինչ ինքնահաւան
Ստեղծում է միտքըս վառուած բորբոքուած,
Չըքանալու է շուտ ծուխի նման.
Եւ այն պատկերը սիրած փայփայած,
Որ մխիթարն է ամայի կեանքիս,
Գիտեմ պիտ ցնդի ինչպէս մի երազ
Յուզուած ուղեղի, որ ցոյց է տալիս
Երբեմն անբաղդին մի վիճակ անհաս:

Բայց դարձեալ քա՜ղցր էք, գեղեցի՛կ օրեր,
Ընտանի՜ սրտիս... Ո՞վ գիտէ յետոյ
Իմ տանջուած հոգին ի՛նչ նոր նոր ցաւեր
Դեռ պիտի տեսնէ. ծաղիկը սիրոյ
Որ հիմայ թօշնած մի հիւանդ ժպտով
Դեռ նայում է ինձ, արդեօք բընաւին
Պիտի չմեռնի՞... գուցէ և շուտով
Լուռ փոթորիկը ճայթի իմ գլխին։

Լուղորդի նըման ես ծովն եմ ընկնում—
Արդեօք միւս ափն ինձ պիտի հանե՞ն
Գոռ ալիքները... զինուորը կռուում
Գիտէ՞ խրանցից ո՞ւր պիտի տանեն...
Գոնէ դեռ շքեղ երազներ հիմայ
Ինձ վայելչութեան բերում են ժամեր.
Ա՜խ, օրհնեա՛լ լինիք, ձեզ չեմ մոռանայ,
Գեղեցի՛կ օրեր, ծաղկավա՛ռ օրեր։

*1886. 15 մարտի.*





## ԳԻՒՂԻ ԺԱՄԸ.

Տա՜ն-դօ, տա՜ն-դօ... Նազլո՛ւ, վեր կա՛ց,
Արևն արդէն մայր է մտնում.
Տե՛ս, Խաթունն էլ գործը պրծած
Փողոցումն է, ժամ է շտապում։
Ժամը տուին—տա՜ն-դօ, տա՜ն-դօ,
Տէ՛ր, փառքըդ շա՛տ. տա՜ն-դօ, տա՜ն-դօ...

Շուտով նախիրն հանդից կը գայ.
Գընանք ու շուտ էլի յետ գանք,
Կովը կթենք, թը՜ռ-թը՜ռ կաթ տայ,
Կովը կթենք, մեր ցաւն հոգանք...

Ա՜խ, Նազլո՛ւ ջան, չես իմանում—
Էգուց էլի աղան կը գայ,
Նորա սիրտը միշտ անկշտում,
Էլ ամպի պէս պիտի գոռայ.

«Շուտով, Գրիգո՛ր, փողերը բե՛ր...—
Էլի չըկա՞յ. կովըդ հանի՛ր»...
Ա՜խ, Նազլո՛ւ ջան, այն ի՜նչ բան էր,
Մի՞տդ է հերու... Տէ՛ր, դու փրկի՛ր։

Հայրիկդ արդէն գընացել է
Որ փող ճարի. Ե՞րբ պիտի գայ,
Տեսնենք մէկը խղճացե՞լ է...
Ա՜խ, սև օրը Տէրն էլ չըտայ:

Շուտով, Նազլու, գընանք ժամը,
Աղօթք անենք. քո ձայնն Աստուած
Շուտ կըլսի—այս անգամը
Մեզ չի թողնի անկով, անհաց...

Բարի մարդիկ միշտ կը լինին,
Հայրիկդ հետը փող կը բերէ.
Փողը կըտանք չար աղային
Որ մեր բիժոն էլ չըխլէ...

Տա՜ն-դօ, տա՜ն-դօ... Նազլու, գընանք.
Արևն արդէն մայր է մտնում,
Էգուց տեսնենք, որ վեր կենանք,
Ի՜նչ նոր արև է մեզ ծագում...
Ժամը տուեն—տա՜ն-դօ, տա՜ն-դօ.
Տէր, փառքըդ շա՜տ. տա՜ն-դօ, տա՜ն-դօ:

1886. 16 մարտի.



## ԱՒԵՏԱՐԱՆ.

Ամէն անգամ, երբ թերթում եմ
Ես էջերը Սուրբ Գրքի,
Միշտ վշտացած մտածում եմ—
Ու՞ր է սէրը մարդկերի,
Որ Փրկիչը սուրբ կտակով
Մարդկութեանը աւանդեց,
Խաչի վրայ իւր արիւնով
Գիր կենդանի դըրոշմեց:

Մարդիկ վաղուց մոռացել են
Խաչն ու քարոզ կենդանի,
Աւետարանն ուրացել են,—
Էլ Սուրբ Գիրքը գին չունի.
Ամենայն գիրք միշտ կարդում են,
Սիրոյ Գիրքը չըկամին.
Ո՞ւր, չըգիտեմ, որոնում են
Բախտը իրանց խեղճ կեանքին...

1886. 16 մարտի.

*
* *

…Լինում է րոպէ, ես անիծում եմ
Ե՛ւ իմ վիճակը և ամբողջ աշխարհ,
Երջանիկ մի օր, ես մտածում եմ,
Բաղդը չի բանայ երբէք ինձ համար։

Չէ՞ կարող էի և ես բիրտ ուժով
Կամ մի ստորաքարշ շողոքորթութեամբ
Հաշտուել մարդկանց հետ, և պատած ոսկով
Հռչակ ըստանալ պատուաւոր անուամբ…

Բայց ո՛չ. չըկամիմ գլուխ խոնարհել
Արիւնով կանգնած մեծափայլ կուռքին,
Ե՛ւ ոչ կարող է իմ սիրտը գրաւել
Շլացնող փառքի փշահիւս դափնին։

Իմ հոգու ձայնին ես հաւատում եմ,
Եւ ազատութեան ու երգի համար
Ես իմ դրօշակն ահա՛ պարզում եմ—
Եւ այսուհետև հաւատըս պայծառ։

1886. 22 ապրիլ.



*
* *

Զքնաղ մանուկ, հրեշտակ դէմքով,
Որ մի դըրախտ երկնային
Խոստանում ես հուր աչերով
Եւ այդ ժպտումն հեշտալին,

Թո՛յլ տո՛ւր կուրծքիդ շուշանադեղ
Յոգնած գլուխըս հանգչէ,
Եւ մետաքսի մազեր շքեղ
Լինին նորան հովանի։

Ճաշակել եմ վաղուց արդէն
Ես թոյնն և մեղրը սիրոյ,
Բայց ինձ հանգիստ դեռ տըւած չեն
Արցունք, ժպիտն իմ յուսոյ։

Դու այժմ իբրև նոր արշալոյս
Ինձ նոր բախտ ես գուշակում.
Սիրո՛ւն մանուկ, ցաւած հոգուս
Արդեօք դու էլ չե՞ս խաբում։

1886. 23 ապրիլ.

# 26 ԱՊՐԻԼԻ.

---

Անպտուղ կեանքիս քսանևրկու գարուն
Անցան գընացին որպէս մի վայրկեան...
Ինչո՞ւ ապրեցայ, ինչո՞ւ եմ ապրում—
Միտքըս չէ կարող տալ ինձ պատասխան։

Ե՜ւ իմ մանկութեան սէրը ցնորամիտ,
Եւ անկեղծ սրտի ոգևորութիւն,
Եւ քաղցր արտասուք, և ոսկէ ժպիտ,—
Ա՜խ, ո՞ւր էք. ո՞ւր է ձեր անուշութիւն։

Գիտութիւնն ինչպէս մի թոյն դանդաղկոտ
Անընկատելի վարակեց հոգիս,
Ինչպէս ցուրտ ձմեռ միտքըս կասկածոտ
Քաղեց, խորտակեց ծաղիկը կեանքիս...



Իբրև երեկուան եղէգն առուակում
Տեսնում եմ պատկերս և սարսափում եմ.
Լսում եմ մարդկան երգերը տրտում,
Անմիտ ու դատարկ, և տաղտկանում եմ...

Եւ երջանկութիւնս թէ անդարձ կորաւ,
Փշրուած ինչպէս տխուր փըլատակ,
Թէ անհոգ տաւղի ձայնը մարեցաւ,
Եւ մընաց ինձ լոկ նորա յիշատակ,

Գոնէ սրտիցըս հիմա՜յ չհեռանար
Նոր ցնորքներիս տխպար սիրելի,
Տանջուած հոգուս մէջ կենդանի մընար
Բուռըն փոթորիկ աշնան կրքերի...

*1886. 26 ապրիլ.*





Դու արտասվում ես և չես ամաչում
Այդ անկեղծ սրտի արտասուքներից,
Եւ գիտես որ զուր հանգիստ ես խնդրում
Յուսահատութեան տառապանքներից։

Ա՜խ, ո՞ր չար ձեռքը քնքուշ թշերիդ
Վաղաժամ քաղեց վարդը կենսաբոյր,
Քաղցր շրթունքիդ խլեց վառ ժպիտ,
Ճակատիդ դըրեց թախիծը տխուր։

Այդ վանդակի մէջ դու ոսկեզօծած,
Սոխակի նըման մոռացած երգեր,
Հալվում մաշվում ես, թևերըդ խուզած,
Զունիս, սիրելի՛, սրտացաւ ընկեր...

Յուսա՛ դու, խեղճո՛ւկ, յուսա՛, թող լինի
Վշտի հրեշտակը քեզ հովանաւոր.
Ո՞վ գիտէ, գուցէ պայծառ վիճակի
Օրը դեռ ծագի և քեզ փառաւոր...

1886. 7 մայիսի.





Ահա քեզ ձեռըս, ընկե՛ր թանկագին,
Սեղմի՛ր դու նորան անվախ, անկասկած—
Բաբախում է նա լքեալ թշուառին,
Փորձութեան բովում կոշտերով ծածկուած։

Թող ծանր վշտերն անցած օրերի
Հանգչի քո սիրտը գոնէ մի վայրկեան—
Արի՛ իմ գիրկը, ընկե՛ր սիրելի,
Ես իմ ջերմ կուրծքին օրօրեմ նորան.

Եւ ցաւակցութեան այրող արցունքով
Տանջանքիդ այդ կուռ շղթան կործանեմ,
Գուցէ և սիրոյ դիւթական շողով
Մի րոպէ ես քեզ հանգիստ պարգևեմ...

1886. 9 մայիսի.





Ես քեզ սիրեցի, բայց չեմ կամենում
Տալ սիրտըս, հոգեա՛կ, քեզ բընաւ գերել—
Մի անկիւն նորա անմեկին խորքում
Ա՛յլ սիրոյ համար ես կամիմ պահել:

Ջերմոցում սընած դու վարդ նազելի,—
Արցունքի մի շիթ չէ կաթել թշերդ,
Կեանքի փոթորիկն անմե՛րձ, ահռելի՛,
Դեռ քո շըթունքից չէ խըլել ժպիտ:

Եւ անհոգ խաղով, ինչպէս թիթեռնակ,
Ճըրագի բոցին դու մօտ ես վազում,
Եւ չես հասկանում թէ համաճարակ
Հրդեհն է այդպէս քեզ հըրապուրում...



Տե՛ս՝ թշուառութեան հազարալեզու
Բոցը բոլորքուած խնդրում է զոհեր,
Տե՛ս՝ այստեղ խռնած իրար մօտ ահու
Վերջին են սպասում քանի՜ անբաղդներ...

Եւ դոցա՛ համար ես սէր եմ պահում,
Այդ ճակատագրի խորթ որդոց համար,
Որոնց առաջին դուռը չէ բանում
Մխիթարութեան քարասիրտ աշխարհ...

Տո՛ւր ինձ, սիրելի՛ս, և քո՛ սէրն անբիծ
Այս հառաչանքի հովիտը տանեմ—
Գուցէ արցունքը ցաւած աչերից,
Մաշուած ճակատից թախիծը խըլեմ:

*1886. 14 դեկտեմբերի.*



*
* *

Ի զուր է, հոգիս, 'ի զուր, իմ հրեշտակ,
Այդ գգուանքներդ, անուշ ժպիտներ.
Դու չես վառելու սրտիս մէջ կրակ,
Նորից կեանք չեն տալ ինձ քո համբոյրներ։

Ինչպէս որ աշնան արեւը աղօտ
Չէր սթափեցնելու մեռնող տերեւներ,
Ինչպէս արհեստը ծաղկանցը անհոտ
Կորուսած բոյրը էլ յետ տալու չէր,

Նոյնպէս քո սէրը նորից բորբոքուած
Իմ մարած հոգուն յարութիւն չի տայ.
Քեզ համար, հոգեակ, իմ սիրտը մաշուած
Այլ եւս չունի նոյն սէրն, հաւատա։

Բայց իբրեւ ցնորք քեզ միշտ պիտ սիրեմ,
Մի քաղցր ցնորք ոսկի մանկութեան,
Իբրեւ կորուսած վաղանցիկ եդեմ,
Մի վառ շող անկեղծ ոգեւորութեան։

1885. 22 Նոյեմբերի։



*
* *

Անապատումը երերուն կեանքի,
Անմիտ ցնորքով մաշուած սրտերին
Խաւարի մէջը եռուն կրքերի
Միակ սփոփանքն ես դու, կայծ երկնային.

Դու անգին գոհար, սէր, գանձ մարդկութեան,
Դու ես որ միայն չարատանջ հոգուն
Բերում ես քաղցրը յոյս երջանկութեան
Եւ կեանքը սիրել տալիս ես մարդուն։

Քանի՜ տանջուելով ծանր բեռի տակ,
Ճնշուած պիտոյքից առօրէական,
Դարձնում եմ աչքերս այն ջինջ, կապուտակ
Երկնքի վերայ անցած մանկութեան,

Երբ նոյնպէս էին իմ օրերն անցնում
Անհոգ խաղերով, քաղցրիկ երգերով,
Ինչպէս վտակը դալար ափերում
Սահում է մեղմիկ կարկաչ հանելով:

Այդ քո պատկերն է, սէր աստուածային.
Դու երբեմն մի շող կենդանի լուսով
Միշտ բորբոքում ես սիրտը մարդկային
Ապրել անվհատ անվախճան յուսով:

1885. 24 Նոյեմբերի.





* * *

Դարձեալ նոր տարի. թող ուրախանան
Բաղդաւոր կեանքով վերածընութեան,
Ում ճակատագիրն այդ վիճակել է,
Ով միշտ յուսացել և ըսպասել է:
Բայց ինձ ի՞նչ պիտի բերէ նոր տարին,
Ո՞չ արդեօք նոր ցաւ իմ տանջուած սրտին...
Ա՜խ, ոսկի շողը մի նոր զգացմունքի
Ինձ մի նոր վշտի աղբիւր պիտ լինի:

Զքնաղ արարած, որ մի հայեացքով
Անմեղ մանկութեան, մի անուշ ժպտով,
Կարող ես կեանք տալ լռած քնարին
Եւ ոգևորել քուն մտած հոգին,
Ես հասկանում եմ որ չեմ արժանի
Վայելել սէրը քո քնքուշ սրտի.

Անմիտ խօսքերով ես չեմ կամենում
Խռովել հանգիստդ այդ քաղցր հասակում:

Ո՛չ, քեզ սիրելով, քո վառ պատկերին
Երկրպագութեան դարձնում եմ բագին
Իմ մաշուած սիրտը և անձնուիրութեամբ,
Անկեղծ արցունքով և անհուն զգացմամբ,
Միշտ պիտ աղօթեմ, տանջուեմ և սիրեմ,
Սէրըս աշխարհից ծածուկ պիտ պահեմ.
Եւ լոկ մի խօսքըդ բարեկամութեան
Ինձ երջանկութիւն պիտ տայ անսահման:

*1886. 2 յունվարի.*





* * *

Նուէր օր. Ս. Թ—ին.

Այս օրերումը ընդհանուր սուգի,
Ջարդուած սրտերի դառն հառաչանաց,
Երբ մենք միշտ պատրաստ մի ծանր կռուի,
Վառում ենք ոյժեր դեռ չըկազդուրուած,

Եւ այս կռուի մէջ ահեղ, սոսկալի,
Ուր որ զըրկուածը նենգաւոր բաղդից
Անհետանում է, որպէս մի ճըճի,
Յաղթուած ոսկէզօծ երկաթի բազկից,

Ուր միայն մէկի ծառն երջանկութեան
Բուսնում է տասի աւերակներից,
Ուր մի ժպիտը ծաղկում է միայն
Հազարաւորի աղի արցունքից,

Ես դեռ անվըհատ շարունակում եմ
Իմ ճանապարհը, դեռ հաւատալով
Թէ գուցէ մի օր և ես գտնում եմ
Այն, ինչ չը կամի բաղդը տալ սիրով:

Բայց եթէ և ես տանջուած, չարչարուած,
Գըլուխ խոնարհեմ իմ ճակատագրին
Խորտակուած յուսով, արիւնըս սառած,
Իբր աշնան տերև քամու առաջին,

Ընկեր սիրելի՛, դու չը մոռանաս
Յիշել անունը մատաղհաս երգչի,
Որ գիտէր տանջուիլ, սիրել հանապազ,
Գուցէ՜ երջանիկ օրուան արժանի...

*1885. 19 դեկտեմբերի.*





## ԵՐԳ.

Աննման ես ինչպէս հրեշտակ երկնային,
Չեմ կշտանում նայելով քո երեսին.
Վառ աչերըդ ինչպէս արև գարնային
Ախ, սիրական, բորբոքում են իմ հոգին:

Իրաւունք տուր ծծեմ մեղըր շըթունքիդ,
Քաղեմ կարմիր այդ վարդերը թշերիդ.
Ով որ առնի հոտը շամամ ծծերիդ,
Էլ կարո՞ղ է թէ մի գին տայ իւր կեանքին:

Թէ Աստուած ինձ պիտի մահ տայ, թող մօտ գամ
Վզովդ ընկնեմ, քեզ համբուրեմ մի անգամ.
Թող ապրշում մազերովդ ինձ կախ տամ—
Բընաւ մի կեանք էլ չի հասնի այդ մահին:

*1886. 14 յունվարի:*



* * *

Զգում եմ արդէն, հանգչում է հոգիս,
Էլ չը կայ բոցը ոգևորութեան.
Զուր է քո խրախոյս, զուր է, սիրելի՛ս,
Էլ ինձ չի ծագի արևը գարնան։

Էլ աղմկալից կեանքը աշխարհի
Եւ ոչ սէրն անուշ իւր երազներով
Այն հրապոյրը չունին վաղեմի,
Այն քաղցրութիւնը և այն մեղմ գոյով...

Վաղուան կեանքից ես դեռ չըքաղած
Եւ ոչ մի ծաղիկ, արդէն ուժասպառ
Ընկած եմ որպէս մի ծերուկ մաշուած,
Եւ վայելչութիւնն արդէն ինձ օտար...

1886. 17 փետրվարի։



* * *

Տրխուր երգիչը քնարը ձեռին
Ողբում էր անբաղդ իւր ճակատագիր,
Քնքուշ ձայները խորտակուած սրտին
Չունէին տալու մի խօսք կարեկիր։

Դառնացած հոգով նա խորասուզուած
Անցած օրերում, ուզում էր այնտեղ
Գտնել այն հանգիստ, որ երգչին տանջուած
Տալ չէր կամենում աշխարհը տգեղ։

Բայց և այն դատարկ որպէս անապատ,
Յիշողութիւններ անցած մանկութեան,—
Կուսի ջերմ սիրտը գլխին յուսահատ
Միայն պարգևեց հանգիստ փրկութեան...

Ո՜հ, թո՛յլ տուր և ինձ, ընկեր նազելի,
Այս քաղցըր օրին ցանկալ որ, պատած
Անկեղծ սիրովը մատաղ քերթողի,
Ծաղկիս դու չքնաղ, իբրև վարդ փթթած.

Եւ քո անարատ ըղձայուն հոգին
Լինի ինձ աղբիւր վառ երջանկութեան,
Քո անբիծ սէրը կեանքիս խաւարին
Ծագէ արշալոյս նոր բաղձի գարնան։

*1886. 21 յունվարի.*





*
* *

Երանի նորան որ տէր է ազատ
Իւր զգացմունքներին,—սիրել և ատել,
Որին բռնութիւն չի տալ յուսահատ
Բաղձիցը զըլուած իւր կեանքն անիծել.
Որ երկնից հետ հաշտ, ներդաշնակ հոգով,
Չէ դարձել գերի անթիւ կրքերին,
Կարող է սէրը ողջունել ժպտով
Եւ նախատելով մերժել անգութին։

Երանի նորան որ շընորհք ունի
Սիրել անձնուէր և անկեղծ սրտով
Սրբել քրտինքը վաստակաւորի
Եւ տառապեալին խընամել փութով.
Եւ երկրպագու Փրկչի սուրբ խօսքին
Անտրտունջ քաշէ իւր ձեռի լուման,
Եւ կարեկցաբար արհամարհուածին
Բաց անէ դուռը մխիթարութեան...

*1886. 27 յունվարի.*



## ԻՆՁ ՄԻ՛ ՍԻՐԻՐ.

Ինձ մի՛ սիրիր․ անբաղդ օրիս
Այդ սէրն ինձ չէ խնդութիւն.
Դաժան վշտից խեղդուած հոգիս
Էլ չի առնի յարութիւն։

Ծածուկ կիրքը ինձ պիտ տանջէ,
Ես չըկամիմ քեզ սիրել,
Բայց իմ սիրտը միշտ պիտ խնդրէ
Քնքուշ սրտիդ մօտ լինել...

Եւ պատրաստ եմ քեզ յաւիտեան
Լինել անկեղծ կարեկից,
Եւ թող բեռը քո տխրութեան
Չըհեռանայ իմ սրտից։

Ինձ մի՛ սիրիր... թող ախտաւոր,
Մաշող սիրոյ փոխարէն
Մտերմութիւն մեզ բաղդաւոր
Կապէ կապով բոցեղէն։

*1886. 25 յունվարի.*



* * *

Անցան դարեր—ստրկութեան
Ոգին տիրեց հայերին.
Էլ չէ սիրում հայրենական
Իւր օջախը հայորդին։

. . . . . . . . . .

. . . . . . . . . .

—Բայց տես՝ հնչեց փողն յարութեան.
«Արիք արտաքս» լսուեցաւ,
Եւ ամէն տեղ կենդանութեան
Քարոզն է—«Քրիստոս յարեաւ»։

Ահա բոլոր անկեալները
Նորից ոտքի կանգնեցան —
Եւ լսվում են սաղմոսները
Աստուածորդու մեծութեան։

Եւ զարթեցաւ մի նոր կեանքով
Նախնեաց ոգին դագաղից,
Մի նոր բարբառ սիրագորով
Թըռաւ նորա բերանից —

«Ժամանակ է, ժամանակ է,
Ծագեց արև, զարթեցէք.
Քրիստոս յարեաւ, վաղուց լոյս է —
Նուտ շարժուեցէք, վեր կացէք»...

*1886. 27 փետրվարի.*





# ԱՆԳՐԱԳԷՏ

(Սիրոկոմլիից).

Երբէք մէկին չեմ նախանձում ես աշխարհի երեսին,
Միայն, գրագէտ դուք պարոններ, նախանձում եմ ձեր բաղդին.
Ա՜խ, գթացէք գեղջուկ որբիս, մի լաւութիւն միայն արէք—
Տուէք մի թերթ ինձ ճերմակ թուղթ, մի փետուրէ գրիչ տուէք.
Եւ ինձ գրել սովորցրէք, սովորցրէք լաւ, շուտով,
Որ գրիչըս կայծակից էլ արագ թռչէ գրելով.
Որ պատմելով թղթի վըրայ ես ձեզ ցոյց տամ ամէն բան
Մեր աշխատանք, մեր չարչարանքն ու մեր խաչը վկայութեան...
Կըյայտնէի, ինչ ցնորքներ, ինչ մտքեր կան իմ գլխում,
Մի ողջ աշխարհ ցոյց կըտայի ես աննման պատկերում...
Բայց այժմ անհետ չըքանում են բոլոր իմ քաղցր երազներ.
Ես անգրագէտ, ես անուս եմ... Սովորցրէք, պարոններ։

Կըգըրէի ես առաջուց, ինչ եմ տեսնում երազում...
Այս երազներն այնպէս շքեղ, հրաշալի՜ են... Եւ դաշտում
Ահա գեղջուկ մատաղ աղջիկն հունձ է անում եռանդով,
Նորան հրեշտակն երկնքից ժպտում է վառ աչերով...
Երևի թէ կարեկցում է նա հնձուորին... Եւ նորա՛ն
Արտուտիկը կամի սփոփել իւր երգովը քաղցրաձայն...
Կըգըրէի ինչպէս ամառն արշալոյսն է փայլփայլում,
Եւ քարերին զարնըւելով կայտառ ջուրն է կարկաչում.
Ի՛նչպէս արտում ցորենի հետ զըոյց է անում մեղմ քամին
Եւ աղօթքի հրաւիրում է փոքրիկ զանգը մեր ժամին.
Ես աղօթել կամենում եմ, բայց չըգիտեմ աղօթքներ —
Ես անգրագէտ, ես անուս եմ... Սովորցըրէք, պարոննե՛ր։

Ազնիւ գործ է թէ մարդ գըրել իւր խօսքերը կարենայ,
Բոլորն ինչ որ մըտածում է, բոլորն ինչ որ գլուխը գայ,
Գրչով պատմէ այն ամէնը, ինչ դիզուել է իւր սրտում,
Ճշմարտութիւն միշտ քարոզէ, բարի գործի մեծութիւն.
Լաւ է նոյնպէս, թէ կարող է, գրչով կծու խօսքերին
Պատասխանէ—սուսերի պէս կըհարուածէ չարերին։
Ես շատ անգամ ծաղր եմ լսում, բայց իմ ուսեալ թշնամուն՝
Միտս այրւում է, պատասխանի չունիմ ոչինչ զօրութիւն,—



Եւ լուր տեղը ես տանջւում եմ և յուզւում եմ և դողում,
Եւ միմիայն թղթի վերայ անմիտ կերպով խազխզում.
Ինձ ծաղրում են, և ամօթու կարմրում են իմ այտեր...
Ես անգրագէտ, ես անուս եմ... Սովորցըրէք, պարոննե՛ր։

Շատ լաւ բան է գիր իմանալ։ Գըրագէտ է վաշխառուն.
Գըրագէտ են դատարանի ծառայողներն անկշտում.
Եռանդով էլ նոքա գրում են, նոցանն է դրախտն աշխարհի,
Իսկ այդ գրելն ինչ փոյթ որ խեղճ մարդու հոգին պիտ հանի...
Շուտո՜վ, շուտո՜վ, գըրիչ տըւէք, սովորցըրէք գործ ածել,
Կամիմ գըրել ազգի համար, նորա համար աշխատել.
Եւ ես նորան կըպաշտպանեմ չարագործից, յիմարից,—
Կ'արտագըրեմ Աւետարանն ես բոլորը ըսկըզբից...
Ա՜յ դու, սագ իմ ձերմակթևիկ, քեզ տըւել եմ կերակուր,
Քեզ սիրել եմ—փոխարէնը թևիցդ ինձ մի գըրիչ տո՛ւր,
Սիրո՛ւն դու սագ, տո՛ւր խնդրում եմ ինձ թռչելու զոյգ թևեր,
Ուր բոլորը գըրագէտ են.—սովորցըրէք, պարոննե՛ր։

*1886. 2 մարտի.*

## ԱՌԱՒՕՏ.

Գիշերն անցաւ. առաւօտեան
Մէգը փռուեց դաշտի վրայ,
Շուտով արտուտն իւր վաղորդեան
Աւետիքը պիտի տայ.
Արշալոյսը բացուեցաւ,
Քնած երկիրն արթնացաւ:
Դեռ նիրհում են դաշտ ու անտառ,
Բայց զեփիւռը արտերին
Գուրգուրալով երգ սիրավառ
Շշնջում է մեղմագին.
Արշալոյսը բացուեցաւ,
Համ-արարած արթնացաւ:

. . . . . . . . . .

. . . . . . . . . .

1886. 18 մարտի:





* * *

Ես քեզ սիրում եմ, սուրբ գեղեցկութեան
Անարատ հրեշտակ, տիպար մաքրութեան.
Սիրում եմ ոչ վառ աչերիդ համար,
Ուր ցոլանում է քո հոգին պայծառ,
Ոչ վարդ այտերիդ, նազուք շրթունքիդ,
Ուր ծաղկում է քաղցր երկնային ժպիտ…

Այդ անմեղութիւնն, այդ անբիծ հոգին,
Օտար աշխարհի տգեղ ախտերին,
Այդ սիրող սիրտը, ջերմ սիրտն անխարդախ,
Այդ վառ հաւատը մանկութեան խաղաղ —
Ահա թէ ինչը, մանուկ պաշտելի,
Ես անկեղծ սրտով քեզնում սիրեցի:

Եւ սեղան կանգնած երկրպագութեան,
Հալուէ ու զմուռս, կնդրուկ սրբազան
Քեզ պիտի ձօնեմ, թէ սէրն իմ սրտի
Քեզ պէս դիցուհուն չէ գոհ արժանի։

*1886. 20 մարտի.*





* * *

Քանի՛, քանի՛ կամեցել եմ
Հանգիստ գտնել կեանքիս մէջ,
Եւ միշտ սիրտըս բորբոքել եմ
Երազներով ես անվերջ։

Ինձ աշխարհը չը կամի տալ
Անդորրութիւնն իմ խնդրած,
Դատարկ յուսով չուզէ մընալ
Սիրտըս մաշուած, խորտակուած։

Եւ չեմ խնդրում անկարելին—
Մի սիրտ, մի սիրտ ըզգայուն,
Որ և սիրուէր և սիրողին
Բերէր սիրոյ վառ գարուն...

*1886. 23 մարտի.*



* * *

Ամենայն անգամ, երբ տեսնում եմ քեզ,
Խելօք աչերիդ նայում եմ զմայլած,
Եւ յանկարծ անփորձ մի մանուկի պէս
Ես կարմրում եմ յուզուած, շփոթուած...
Ամենայն անգամ որքան էլ տրտում
Ինձ տուած լինիմ մաշող մտքերի,
Քո ներկայութիւնն աղբիւր է լինում
Ինձ համար ուրախ, զուարթ ժամերի։

Այս ի՞նչ է արդեօք, ո՛վ կոյս նազելի.
Մի՞թէ սէր արդէն. ո՛հ, եթէ այդպէս—
Թող ուրեմն, հոգեակ, նուէրն երկնքի,
Այս աստուածեղէն կայծն հասնի և քեզ.
Կ'ուզէի և քո արիւնը վառուած
Սիրոյ փոթորիկ հանէր քո սրտում,
Կ'ուզէի տեսնել քո հոգին խռոված,
Արցունքի շիթեր և քո աչերում...

1886. 25 մարտի.



## ԱՂՕԹՔ.

„Տէր, եթէ զշրթունս իմ բանաս, բերան
իմ երգեսցէ զօրհնութիւնս Քո“։

Գիշեր ու ցերեկ, Տէ՛ր, Քո սուրբ անուան
Մենք պիտի լինինք յաւէտ փառաբան.
Թէ արև ծագէ, քարոզ Քո փառաց,
Թէ գիշեր հասնի, պարգևդ ողորմած,
Մենք խոնարհ հոգով Քո մեծ բարութեան
Կանգնած ենք պատրաստ լինել սրբաբան։

Բայց մարդիկ վաղուց մոռցած Քո խրատ,
Դահիճ են դարձել եղբարցն հարազատ.
Ուրացած անմահ խօսքըդ մարդասէր
Հզօրն աշխարհին դարձել է արդ տէր,
Եւ փոքրը չունի այլ ևըս բերան
Կարդալ սաղմոսը Քո օրհներգութեան։

Ընդունի՛ր արդ, Տէր, մեր խունկն աղօթից,
Տո՛ւր մեզ փայլել խոստացած բաղդից—
Թէ վաստակեալներն ու բեռնաւորներ
Պիտի գտանեն հանգիստ երկնանուէր.
Եւ բա՛ց մեր շրթունք, Տէր Ադոնայի,
Երգել օրհնութիւն քո անբաւ փառքի:

1886. 28 մարտի.





*
* *

Անլոյս խաւարը, չարութեան ոգին
Տիրել էր աշխարհ, և վաղուց մարդիկ
Ապառաժ սրտով կործանել էին
Խանդավառ զգացման պատկեր գեղեցիկ.
Անցած օրերի մաքուր պարզութիւն
Ապականութեան ասպարէզ դարձած,
Էլ չէր կարմրում նենգամըտութիւն,
Առաքինութեան փառքըն էր շիջած…

Բայց հասաւ օրը մի նորոգ կեանքի,
Եւ Բեթղեհեմից նոր արև ծագեց,
Այրից առաջին ճիչը Մանուկի
Փրկութեան ժամը մարդկանց աւետեց.
Նորա ժպիտն էր որ անհուն սիրով
Սրտերի սառուցն պիտ հալեցնէր,
Եւ մարդկութիւնը Նորա շրթունքով
Ճշմարտութիւնը պիտի ուսանէր:

1886. 1 ապրիլի.



## Գ.-Ք—ԻՆ.

Նա որ հզօր, դիւթիչ ձայնով
Հայի հոգին բաց արեց
Եւ սրտառուչ ազատ երգով
Մեզ խինդ և լաց պատրաստեց,

Թող և այսօր հնչեցնէ
Իւր մեղեդին համարձակ,
Սիրի ձայնով թնդացնէ
Հայ աշխարհը բովանդակ:

Եւ կենդանի այն վառ քարոզ
Անշահ սիրոյ, սուրբ գործի,
Ինչպէս վտակ առատահոս,
Թող ամէն տեղ տարածուի:

Թող խօսքն յստակ և անկաշառ
Ոյժ տայ թոյլին հանապազ,
Քաջին բաշխէ հաւատ պայծառ,
Եռանդ ու խանդ աննուազ:

1886. 30 մարտի.



## ՀԱՏԻԿ.

Լոյսը բացվում է. շուտ արտը գընամ,
Պատռեմ սուր խոփով ես կուրծքը հողի,
Իմ սիրուն հատիկ, քեզ նորան պահ տամ
Մինչև օրերը ամրան արևի:

Թաղեմ քեզ, հատի՛կ, և դարդըս քեզ հետ.
Թէ Աստուած ուզեց, դու կանաչեցիր,
Թող դարդըս մեռնի գետնի տակ անհետ,
Դու ինձ մխիթար կրկին տուն դարձի՛ր:

Եւ ջերմ աղօթքով Տիրամօր առջև
Ես մոմ կը վառեմ, ես խունկ կը ծըխեմ,
Որ քեզ պարգևէ մի առատ անձրև,
Որ քեզ միշտ սիրով նայէ խնդաղէմ:

Բայց թէ այդ շնորհին մեղքերիս համար
Արժանի չլինիմ, ծով կը դարձնեմ
Ես տաք քրտինքը ճակտիս արեան
Որ քեզ, իմ հատի՛կ, ծարաւ չթողնեմ:

Ծըլի՛ր, կանաչի՛ր, ոսկէ սաւանով
Ծածկի՛ր իմ արտը ողջ ալէծածան,
Նոր այն ժամանակ անուշ շըշիւնով
Տո՛ւր ջարդուած սրտիս մի քուն հանգստեան:

*1886. 2 ապրիլի.*





## ԶԱՏԻԿ.

Դարձեալ գարուն, և խնդագին
Արթնանում է բնութիւն,
Պարգևում է արևն երկրին
Իւր շնորհատու զօրութիւն:

Եւ սթափում է մի նոր կեանքով
Կանաչ տերև, թաւիշ խոտ,
Եւ բերում է ողջոյն սիրով
Զեղ զեփիւռը քաղցրահոտ:

Եւ կենսաբեր այս վառ գարնան
Գեղեցկութիւնն ոգելից
Կամի յուսալ մի պատասխան,
Ներդաշնակ խօսք աշխարհից:

Բայց խռովայոյզ միտքը մարդկան
Ըսպասում է այն օրին,
Երբ սէրը մեծ ու անվախճան
Պիտի յառնէ վերստին:

Եղբայրական սուրբ համբուրով
Մարդիկ միմեանց մօտեցած
Ողջագուրեն անոխ հոգով
Պիտի շտապեն սէր գրկած:

Կը գայ այդ օրն, էլի նորէն
Մարդիկ մեծ սէրն անվախճան
Ամբողջ տարով պիտի թաղեն
Մինչև նոր օրն յարութեան...

1886. 4 ապրիլի.





## ԵՐԿՈՒ ՀԱՄԲՈՅՐ.

Քանի դեռ մատաղ արիւնը եռում
Երակներիս մէջ զարկում է ուժգին,
Եւ ծաղիկներով կեանքը զարդարում
Խոստանում է մեզ մի դրախտ երկնային,—
Սէր չքնաղ, դու ես համբոյրըդ տալի
Մեր ախտաբորբոք այրուող շրթունքին,
Բաղձի խաբուսիկ համբոյր թունալի,
Ինչպէս ոսկեվառ երազ հիւանդին:

Բայց կը գայ ժամը, երբ հրաժարական
Պիտի տանք ողջոյն բոլոր պատրանաց,
Եւ անուշաբոյր կեանքի քաղցրութեան,
Եւ անագորոյն դառն հառաչանաց,—
Եւ ահա գունատ մահը կը դրոշմէ
Իւր սառն համբոյրը մեր սառ շրթունքին,
Եւ գիտեմ որ նա պիտի չխաբէ
Մեզ փաղաքշելով իւր անկեանք կուրծքին:

1886. 5 ապրիլի.



*
* *

Ա՜խ, ի՜նչպէս, հոգեա՛կ, կը կամենայի
Քեզ հետ միայն մենակ գոնէ մի վայրկեան,
Եւ, թէպէտ զրկուած զգուանքից բաղձի,
Խնդրել քեզանից խօսք համակրութեան։

Մեր բոլոր կեանքը անցնում է չնչին
Փոքրիկ կրքերով, ունայն հոգսերում,
Անմիտ կռուի մէջ, ուր չունի մի գին
Վեհ, ազատ հոգու առաքինութիւն։

Եւ ես ատում եմ վայելչութիւնը
Կեանքի անխորհուրդ եռուն խնջոյքի,
Ուր տիրագլուխ է սեւ չարութիւնը,
Բուրմունքը չըկայ սիրավառ սրտի։



Կ՚ուզէի գտնել հանգիստ երգի մէջ,
Մի վերջին, մաքուր, հոգեբուղխ երգի,—
Բայց սիրտըս դատարկ, և ես մի անշէջ
Կարօտ եմ բոցոտ, անհուն զգացմունքի։

Ես քեզ եմ դարձնում, հոգեա՛կ, իմ աչքը,
Լի մի խանդակաթ սիրով անսահման...
Բայց մատաղ հոգուդ արդեօք իմ խօսքեր
Պիտի հասնի՞ն թէ՝ լոկ ձայն պիտ մընան։

*1886. 5 ապրիլի.*



* * *

Ես անմռունչ գրնումէի ճանապարհ
Իմ յեղյեղուկ բաղդին տըւած ինձ խոնարհ.
Բայց այն օրից երբ ողջոյնըս հրաժեշտի
Իմ մանկութեան քաղցր օրերին ես տըւի,
Երբ ես թոյնը ճաշակեցի դիտութեան,
Երբ խաղալիք դարձայ մարդկանց նենգութեան,—
Ես ասացի՝ աշխարհ, քո ողջ պարգևներ
Խաբէութիւն, դատարկ, անմիտ ցընորք էր:

Ես չըկամիմ ոչ քո փառքը, գիտութիւն,
Ոչ քո ոսկին և ոչ խարդախ ստութիւն.
Չըկամիմ քո արեամբ գնած սարդենին,
Ոչ կարճատև կուսի սիրոյ վարդենին.
Այն մեղըր որ դու ոսկէզօծ բաժակով
Տալիս ես ինձ ժպտածիծաղ երեսով,
Միայն ծածուկ մահադեղ է կործանող,
Ծաղկափունջըդ միայն փուշ է ծակոտող...



Աշխարհ, ես քո կը՛ հաւատամ վայելքին,
Կը հաւատամ երջանկութեան մարդկային,
Երբ որ ձգես դու կեղծաւոր այդ դիմակ,
Երբ ողջունես մի նոր կեանքի արեգակ,
Երբ անխընայ արդարութեան խարազան
Քո սրտիցը խըլէ սերմը չարութեան
Եւ ականջըդ բանայ լըսել երկնային
Անմահ սիրոյ սուրբ բարբառը անմեկին:

*1886. 6 ապրիլ.*



*
* *

Քնքուշ տողերում ես պիտի երգեմ
Սրտիս Թագուհու նազելի պատկեր.
Ես նորա առաջ զոհ պիտի բերեմ
Հոգուս անմեկին բոլոր զգացմունքներ։

Թէ շունչ կայ բերնումս և սրտումըս յոյս,
Դեռ չէ ցամաքել արցունքն աչերիս,—
Այդ դու ես, հոգեակ, որ ծագում ես լոյս
Այս խաւարի մէջ անապատ կեանքիս։

Եւ ես կը հիւսեմ պսակ քո գլխին
Վառ արշալուսոյ ոսկի շողերից,
Եւ քո կուսական ցօղելու կուրծքին
Կը խլեմ բոյրը հարաւոյ վարդից։

Եւ կ՚առնեմ ձեռըս եօթնաղի քընար,
Կը հնչեցընեմ երգըս ոլորուն,
Թող լսեն մարդիկ, ճանաչէ աշխարհ
Անմահ դիցուհուս սուրբ գեղեցկութիւն։

1886. 14 ապրիլի.



*
* *

Երբ ես նստած եմ տխուր և միջին
Պատանիների անհոգ շրջանում,
Որ քեզ շուրջ պատած, իմ ընկեր քաղցրիկ,
Հաճոյանալ են այնպէս ցանկանում,
Ո՛հ, դու մի՛ կարծիր թէ այն մեծամիտ
Հպարտութիւնն է շրթունքըս կապում
Եւ ուրախութեան բաղձալոր ժպիտ
Ամպամած դէմքիցս հեռու է պահում։

Ես լուռ եմ լինում. բայց թէ քո աչեր
Հոգուս խորքերը թափ անցանէին,
Դու կը տեսնէիր թէ ինչ զգացմունքեր
Այնտեղ բորբոքուած, կուտակուած էին.
Ես չեմ կամենում 'ի զուր վրդովել
Իմ վառ, երջանիկ հոգեզմայլութիւն,
Ես կամիմ լռիկ սրտումըս պահել
Սիրուն պատկերիդ անվերջ քաղցրութիւն։

Ահա հասնում է և խորին գիշեր,
Դու ճաշակում ես հանգիստ անխռով,
Իսկ ես քուն չունիմ և երկար ժամեր
Անցնում եմ խաղաղ, բայց անուշ ցնորքով.
Պատկերդ առաջիցս էլ չէ հեռանում,
Խորին գիշերով աղօթքի համար,
Քունըս մոռացած, ես վեր եմ կենում,
Օրհնում եմ, հոգեակ, օրերըդ պայծառ:

1886. 15 ապրիլի.





* * *

Եւ այս գարուն կ՚անցնի շուտով,
Կը թառամի մանուշակ,
Կը ծածկուի սև՛ վարագուրով
Երկնից դէմքը անուշակ:

Միայն սէրը միշտ կը մընայ
Իմ սրտումը կենդանի.
Ոչի՛նչ սիրող սրտի վերայ
Բռնանալու ոյժ չունի:

1886. 15 ապրիլի.



* * *

Երբ ես տեսնում եմ որ ունայնասէր
Աշխարհը այսօր պսակում է փառքով
Նորան, որին ինքն յետոյ պիտ ծաղրէր
Նախանձով վառուած, մի աղքատ հոգով,—
Ես կամենում եմ այն կեղծ երեսին
Տալ ճշմարտութեան սուրբ խօսքն անկաշառ,
Եւ իբրև կարմիր երկաթ ականջին
Հասցնել մի մեծ, սոսկալի բարբառ —
Հող էիր, ո՛վ մարդ, հո՛ղ դառնաս դարձեալ:
Եւ եթէ մի է բոլորիս վախճան,
Անվերջ երազով ապրել և յուսալ
Միայն մի թիզ հող վերջին հանգստեան,
Ի՞նչն է մեզ ստիպում անմիտ պարծանքով
Ցուցամոլութեան, մանկան արժանի,



Փառքի պսակը հիւսել մեր ձեռքով,
Որ մեր ոտներին կոխան պիտ լինի:
Մե՛նք կը տապալենք այն վեհ բարձրութիւն,
Որ մե՛նք ենք կանգնում իբրև աշտարակ,
Եւ խըրոխտ շէնքի հոյակապութիւն
Կը մնայ մեզ իբրև տխուր աւերակ...

*1886. 17 ապրիլ.*



*
* *

Ինչպէս վըտակ ես կը թափեմ
Աչերիցըս արտասունք,
Եւ նոցանից կը բուսցընեմ
Ես քեզ համար վառ ծաղկունք:

Եւ հընազանդ իմ վիճակին
Ես կը տանջուիմ համապազ,
Լինի՛ միայն, ընկեր անգին,
Երջանկութիւնդ անպակաս:

Գիտեմ որ ինձ չես մոռանայ,
Երբ ես իջնեմ գերեզման,
Կը յիշես ինձ որ ես մեռայ
Քո մտերիմ, սիրական:

1886. 19 ապրիլի.





*
* *

Երբ մատաղ մուսաս ժպիտն երեսին
Առաջին անգամ ինձ երեւեցաւ,
Միայն գեղեցկութեան, սիրոյ պատկերին
Երկրպագելու ինձ պատուէր տուաւ:

Ես ուսայ երգել և երգում էի
Անվարժ տողերով հրաշքները գարնան,
Նազելի վիշտը կուսական սրտի,
Վայելչութիւնը սիրոյ արբեցման:

Անցան տարիներ, և ներքին մի ձայն
Մի նոր հուր վառեց իմ յուզուած հոգում,
Երբ վըրաս ինչպէս կապար ծանրացան
Կեանքի պիտոյքը, մարդկան չարութիւն:

Սիրոյ զուարճութեան մեղեդիների
Ժամանակը չէ, ով անհոգ երգիչ.
Դուրս եկ ասպարէզ մահառիթ կռուի,
Թունով թաթախուած սուր կարող գրչի:

Անխնայ զարկիր եղեռնագործին,
Մեծատան երեսն այրիր ամօթով,
Մեր բոլոր կեղտը ցոյց տուր աշխարհին,
Խստասրտութեան անարգ պըսակով:

Թող չարութիւնը սարսափի տեսած
Արժանի պտուղն ըստոր գործերի,
Եւ կեղծաւորը ուժաթափ եղած
Թող իւր ոսկեզօծ դիմակը հանի…

1886. 20 ապրիլի.



*
* *

Երբ նա դեռ նոր էր լոյս աշխարհ տեսել—
Դառն աշխատութեան, կարիքի զաւակ—
Աւանդ ըստացաւ սիրել և գործել,
Ճակատին ծանըր խաչի նըշանակ:

Եւ նա մեծացաւ և կեանքը մըտաւ
Եւ հաւատարիմ մընաց իւր խաչին,
Յանդուգն լուղորդ՝ ալեաց մէջ ընկաւ,
Մրցում էր դիմում փրկութեան ափին:

Աներկբայ մտքով, հաւատող հոգով
Քարոզում էր իւր խաչի քաղցրութիւն,
Ինչպէս խարազան երկաթի խօսքով
Նա հալածում էր շահ ու բռնութիւն:

Բայց չարաճըճի քուրմերը ուժի
Մահաթոյն լեղի արբուցին նորան,
Կարմիր երկաթով նշանը խաչի
Ջնջեցին պայծառ ճակատի վըրան…

Եւ հաւատարիմ իւր կոչման մեռաւ,
Սուրբ ճշմարտութեան անբիծ նահատակ,
Իսկ սիրոյ նշանն անմահ դրոշմուեցաւ
Շատերի սրտում մէկի փոխանակ…

*1886. 16 դեկտեմբերի.*





*
* *

*„Սովորեցէք բարութիւն անել, որոնեցէք իրաւունք, ուղղութիւն ցուցէք զրկուածին, որբի դատը տեսէք, որբեւայրու դատը պաշտպանեցէք:“* **Մարգ. Եսայեայ, Ա. 17.**

Մի՛ թողնիր, երգիչ, քնարդ կախած
Որ նորան ժանգով տարիքը պատեն,
Ոսկի լարերին դու ոգեւորուած
Զարկիր մատներով, թող դարձեալ հնչեն:

Թող հնչեն նորից հին երգը անմահ
Եւ վառեն սիրով սրտերը մարդկան,
Թող նոքա նորից օրհներգեն անահ
Գործերը բարւոյ և կարեկցութեան:

Ինչպէս չէ կարող ձմեռն արգելել
Գարունը շքեղ ծաղկաբոյր գալման,
Նոյնպէս ճշմարիտ խօսքը խափանել
Չէ կարող ձայնը անմիտ չարութեան:

*1887. 2 յունվարի.*



## ԵՐԳՉԻՆ.

Թող երգդ հնչէ ներդաշնակ,
Ազատ սրտի վառ զեղմունք,
Թող զարթեցնէ համարձակ
Մեր քընեած զգացմունք։

Մենք չըկամինք խարխափել
Խաւարի մէջ տգիտութեան,—
Կամինք սիրուիլ և սիրել,
Հաւատարիմ մեր կոչման։

Վառէր դու մեր սրտերում
Հուրը ազնիւ կրքերի —
Երկրպագու ենք կանգնում
Ճշմարտութեան պատկերի։

1887. 23 յունվարի.



## ԵՐԱԶ.

Սիրուն գլուխդ կուրծքիս խոնարհած
Դու լալիս էիր և ինձ մրմնջում.
«Անգո՛ւթ, հերիք չէ՞, ես այսպէս տանջուած—
Անսահման սէրըս դու չես նկատում»։
Եւ լալիս էիր այնպէս կաթոգին,
Գոհար շիթերը քո արտասուքի
Ինչպէս հուր՝ ջարդուած սիրտըս այրեցին,—
Թէպէտ երազ էր այս, իմ նազելի՛։

Իսկ ես անդադար, վշտիցը խեղդուած,
Ողբում եմ սէրըս—դու չես նկատում.
Իմ տխուր երգը քո անուամբ հիւսուած
Ցրտացած սիրտըդ բընաւ չէ շարժում։
Ա՜խ, ի՜նչ երջանիկ ես կը լինէի,
Եթէ երազում թափած արցունքիդ
Գոնէ երկու շիթ իրաւ տեսնէի,
Իմ վշտի հրեշտակ, այդ վառ աչերիդ...

1887. 25 յունվարի.

* * *

*Նուիրում եմ իմ քոյր Փառանձեմին*

Ամենայն անգամ, երբ թեթեւամիտ
Դիպչում է մուսաս սրտիս լարերին,
Քնքուշ մատներով խըլում է ժըպիտ
Եւ գըտնում թախիծն իմ անհոգ ճակտին,—
Անցած պատկերներ խուռըն երամով
Լցվում են սիրտըս, զարթչում է հոգիս,
Եւ միտքըս հեռու թռչում է սիրով
Նազելի աշխարհն մանուկ օրերիս։

Եւ կամենում եմ սէր երգել միայն
Եւ քաղցրութիւնը մաքուր հասակի,
Անուշ ժամերը անամպ խնդութեան,
Կենդանի հրճուանք կուսական սրտի։



Բայց միշտ ակամայ լարերը բեկբեկ
Տխուր են հնչում օրհներգը սիրոյ,
Էլ չէ երեւում ինձ սէրը երբէք
Իբրեւ վառ գեղմունք երջանիկ հոգւոյ։

Եւ միշտ լսվում է մի ձայն լարերից,
Իբրեւ հառաչանք պաղատող սրտի,
Էլ չէ հեռանում նա իմ ականջից,—
Այդ ձայնն անմեկին մի խորին վշտի.
«Այնտեղ ուր արցունք, շղթայ և աւեր,
Ուր լսվում է լոկ հառաչք լալագին,
Քո քընարիցը թող ուրախ ձայներ,
Ո՜վ թշուառ երգիչ, բընաւ չըլսուին»...

*1887. 26 յունվարի.*



* * *

Թող այսօր մութն է քեզ համար արև,
Զարատանջ հոգիս, թող անվերջ ցաւով
Բաղդն իբրև խորթ մայր բերէ քո առջև
Կեանքի բաժակը, լի դառըն թունով,—

Կը գայ և մի օր քո վառ արշալոյս,
Դու կը մոռանաս անցեալի ցաւեր,
Խաղաղ վիճակի կըցոլայ քաղցր յոյս,
Ոգևորութեան կհոսեն արցունքներ...

*1886. 28 սեպտեմբերի.*





* * *

Դու չըկամիս, ով կոյս, լինել
Իմ տանջանքին մասնակից,
Դու չըկամիս հըրաժարուել
Այդ քո անհոգ վիճակից:

Բայց թէ սիրտըս դու տեսնէիր,
Ճանաչէիր իմ հոգին,
Ի՛նչ է վիշտը — կ'իմանայիր,
Կը սիրէիր դու երգչին:

Շատ գոհարներ վառ աննըման
Ալիքներում են թաղուած,
Շատ ըզգացմունք, սէր անսահման
Սրտիս խորքում են պահուած:

*1887. 27 յունվարի.*



## ԱՇՈՒՂ.

Ասի՛ աշո՛ւղ, առ չունգուրըդ, մեզ բան ասա սրտալի,
Կարօտ ենք քու անուշ ձէնին, մի բան ասա սրտալի.
Սրտի խօսք ենք ուզում քեզնից որ զարթնացնի մեր հոգին—
Առ չունգուրըդ, դարդո՛տ աշուղ, մեզ բան ասա սրտալի։

Գիտենք որ դու միշտ տանջվում ես հազար ու մի ցաւերով,
Հայրենիքիդ խոր խոցերը դու համրում ես դարերով,
Ջես լըւանայ էդ խոցերը արտասունքի ծովերով—
Առ չունգուրըդ, ցաւո՛տ աշուղ, մեզ բան ասա վշտալի։

Լուռ մընալով մեր վէրքերին պիտի չանես դու դարման.
Արար-աշխարհք գիտի չըկայ մեր դարդերին չափ-սահման.
Մնջութիւնն էլ նըշան հօ չի՞ մի գովելի յատկութեան.
Առ չունգուրըդ, մեզ բան ասա—թող խօսքդ ըլնի ցաւալի։



Էդպէս խօսքեր շատ ենք լսել, էլ կըլըսենք անտրտունջ,
Մեր չըխօսկան ըլելուցն է մընացել ենք անտէրունչ.
Լաւ է ազատ լաց ըլնիլը, քանց դարդ տանիլն անմռունչ,
Ասա լսենք, ի՞նչ անենք որ խօսքըդ կ'ըլնի ողբալի։

Տեսնում ես որ մենք թըմրած ենք, քունն անուշ է մեզ թըւում.
Է՞ր ես դու էլ մեզ բոլորիս մաշող քընիցն յաղթըւում.
Առ չունգուրըդ, տո՛ւր լարերին, կըրակ վառի՛ր մեր սրտում
Մեզ ամենից նոր շունչ տուող մի բան ասա սրտալի։

*1887. 22 յունվարի.*



* * *

Հանի՛ր, սիրելի՛ս, բեր ոսկի քընար,
Ես կամենում եմ ցրուել իմ թախիծ,
Տեսնել եմ ուզում իմ կեանքն էլ պայծառ
Եւ վիշտը վանել հեռու իմ սրտից։

Բաւ է ինչ լացի, հերի՛ք արտասուք.
Արցունքի տեղակ թող աչքիցս բղխին
Վառ ցօղի շիթեր, քաղցր ինչպէս կնդրուկ,
Թող կեանք տան մարող իմ անյոյս սրտին։

Սուտ է, կարող եմ ես դարձեալ սիրել
Զոհելով բոլորն ինչ ունի հոգիս,
Չէ՛, դեռ կարող եմ ես անուշ երգել
Չքնաղ պատկերը իմ սիրականիս։

Կ'ուզես ինձ ատի՛ր, ո՛վ իմ թագուհի,
Կ'ուզես ծիծաղի՛ր զգացմունքիս վըրան.
Յաւիտեան մընալ քո ձեռին գերի—
Չըկայ այլ վիճակ ինձ երջանկութեան։

1887. 21 յունվարի.



* * *

Ասում են. «Պոյետ, մենք չենք կամենում
Արտասուք տեսնել, լսել հառաչանք.
Ի՞նչ ես քո այրող վիշտը մեզ պատմում,
Ի՞նչ ես դու ողբում քո անվերջ տանջանք.
Մենք միայն վայելք ուզում ենք կեանքից,
Հրճուանք, խնդութիւն և ուրախ տաղեր,
Մեզ անհոգ ժամեր երգի՛ր ոգելից,
Կեանքի խնջոյքը, գինով բաժակներ»...

Եւ դու լսում ես անմիտ ցնծութեան
Ճիչեր արձակած անդուռն բերանից,
Եւ չես սպասում մի մաքուր զգացման,
Մի ազնիւ սիրոյ նշոյլ դոցանից...
Տեսնում ես շուրջդ կարիք և զրկանք
Եւ ըստրկութեան ճնշող շղթաներ,
Եղբայրքըդ, կեանքից չը տեսած գգուանք,
Վաղ ճաշակել են հոգեմաշ ցաւեր։

Չես կարողանում քնքուշ մատներով,
Ոգևորութեան երջանիկ ժամում,
Դիպչել լարերին, թէ հլու քնարով
Երգելու լինիս մի անհոգ խնդում.
Եւ կատաղում ես որ քո զգացմունքին,
Վեհ հոգուդ չկայ մի խօսք համակիր,
Յուսահատվում ես որ քո քարոզին
Առաքելական՝ չունիս ունկնդիր։

Բայց հանգիստ մնա, կը գայ ժամանակ—
Կ'անցնէ խաւարը մոլեռանդութեան,
Կը գայ նոր սերունդ, զգալու ընդունակ,
Լուսածին որդիք սուրբ ազատութեան.
Եւ արքայական քո բաց ճակատին
Հըպարտ սարդենին կը փայլի փառքով,
Եւ քո թունալից թուող տողերին
Մարգարիտ կ'շարեն սիրոյ արցունքով…

*1887. 9 փետրվարի.*





*
* *

Քեզ մօտեցայ սէր յուսալով,
Պայծառ դէմքիդ նայեցի,
Ես — խաւարած վշտի ամպով,
Դու — արշալոյս նազելի։

Ես ասացի. «Ինձ քոյր եղի՛ր,
Եղի՛ր ընկեր ցաւակից,
Սէրըս, երգըս ընդունի՛ր
Նուէր տանջուած մի սրտից»։

Բայց դու՝ զաւակ փարթամութեան,
Չը հասկացար երգս աղքատ.
Դու — նոյն անհոգ թռչնակ գարնան,
Ես — նոյն երգիչն յուսահատ…

*1887. 11 փետրվարի.*





* * *

Մընա՛ք բարով, արև, գարուն
Եւ խնկաբոյր ծաղիկներ,
Կարկաչահոս վըտակ սիրուն,
Կանաչազգեստ բլուրներ.

Մընա՛ք բարով, համբոյր և սէր,
Դէմքով հրեշտակ կոյս չքնաղ,
Վայելչութեան պայծառ ժամեր,
Քաղցըր ժըպիտ, կեանք մատաղ.

Ազատութիւն ես սիրեցի,
Խեղճի լացը, հառաչանք,
Ես քընարըս նուիրեցի
Վիշտ երգելու և տանջանք...

1887. 12 փետրվարի.







* * *

Դու ծաղկում ես ինչպէս վարդը հալաւի,
Քեզ փայլում է առաւօտեան շողն ոսկի,
Եւ ցօղում է ծաղկանց բոյրը քո կուրծքին
Անուշ զեփիւռն՝ գուրգուրալով հեշտագին.
Եւ աստղերը շողշողալով ճակատիդ
Քեզ ժպտում են գիշերները խնդամիտ.
Թիթեւաքայլ եղնիկի պէս նազ տալով,
Հալեցնում ես մատաղ սրտեր աչերով:
Բայց չըգիտես դու քո ոյժը, սիրելի՛,
Միամիտ ես, անփոյթ իբրև աղաւնի.
Այրո՛ղ, մաշո՛ղ սիրոյ բուռըն փոթորիկ
Դեռ չէ յուզել մանուկ կուրծքըդ գեղեցիկ...

Եւ իմ միակ ցանկութիւնն է որ անբիծ
Սիրտըդ ըզգար սիրոյ հրճուանքն ու թախիծ,
Եւ գուրգուրանքն հասկանայիր զեփիւռի,
Եւ սիրտըդ թունդ զարկել տար բոյրը վարդի,
Եւ ըզգայիր որ բացի խաղն, անհոգ կեանք,
Կայ ակամայ արցունք և վիշտ և տանջանք:

1887. 14 փետրվարի.



## ԱՐՏԱՒԱԶԴ.

Զարկեցէք, դարբիններ, կռանը սալին,
Զարկեցէք կռանը — շղթայքն ամրանան,
Անիծեալ արքայի կապանքն ամրանան,
Զարկեցէք, դարբիններ, կռանը սալին:

Ահարկու ամպերը եկան ժողուեցան,
Տէր Մասեաց ճակատին սեւ քող փաթթեցին,
Գոռում է փոթորիկ գազանի նման,
Հառաչում սուլումէ կատաղած քամին:

Զարկեցէք կռանը. խորունկ քարայրից
Ահա չար հողմի հետ հասնում են ձայներ...
Ցոլացաւ փայլակը — արքայի աչքից
Դէպի վեր թռչում են բարկութեան կայծեր:



Կամի նա ելանել վրէժխնդիր հոգով
Իւր անվերջ տանջանքի թոյնը մահաբեր
Աշխարհի չորս կողմը շաղ տալու մտքով, —
Բայց ամուր են նորա ծանըր շղթաներ:

Մռնչում գամփռերը կրծում են կապանք,
Կրծում են անդադար կապանքն արքայի...
Արտաւազդ, վերջ չունի հոգուդ տառապանք,
Եւ դեռ շատ հեռու է վախճանն աշխարհի:

Եւ անզօր չարութեան քո կուռ հարուածներ
Դեռ պիտի փշրուեն մեր մուրճի տակին. —
Սպասում ենք մենք դեռ եւս գեղեցիկ օրեր,
Դեռ հաշտ է երկինքը մեղսոտ աշխարհին:

Բայց եթէ քարացած մենք չենք լսելու
Բարբառը սուրբ սիրոյ, և վերածնութեան
Նոր կեանքի աւազան մեզ չէ փրկելու, —
Արտաւազդ, փշրուի թող մեր կուռ կռան.

Մենք էլ չենք զարկելու երկաթի սալին,
Թող կրծեն գամփռերդ ոտքիդ շղթաներ,
Արձակուեն բազուկներդ, և դու աշխարհին
Դուրս արի բերելու կոտորած, աւեր...

Բայց ոչ. մենք փրկութեան դեռ հաւատում ենք.
Մեզ մի նոր երկնքից նոր լոյս կը բացուի,
Եւ ահա ծիածանն արդէն տեսնում ենք
Մենք ազատ, լուսաւոր մի նոր վիճակի...

Զարկեցէք, զարբիններ, կռանը սալին,
Զարկեցէք կռանը — շղթայքն ամրանան,
Անիծեալ ալքայի կապանքն ամրանան,
Զարկեցէք, զարբիններ, կռանը սալին։

*1887. 18 փետրվարի.*





# ՑԱՆԿ.

